Գասպարյան, Հ. Հ. (1979) Դերսիմ (Պատմաազգագրական ակնարկ). Պատմա-բանասիրական հանդես, № 2 . pp. 195-210.

# ԴԵՐՍԻՄ

## (Պատմաազգագրական ակնարկ)*

Հ. Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

*Դերսիմի լեռնաշխարհը, որ այժմ կոչվում է Տունջելի, գտնվում է Հայկական Տավրոսի արևմտյան ճյուղի շրջանում։ Այն պատմական Հայաստանի Ծոփաց աշխարհն է (ըստ Ղ. Ալիշանի՝ Փոքր Ծոփք կամ Ծոփք Շահունյաց[1]) և տարածվում է հին Դարանաղի գավառից (Երիզա կամ Երզնկա) հարավ և Քղիից (Խորձյան գավառ) արևմուտք՝ արևելյան երկայնության 38°45′—39°45′-ի և հյուսիսային լայնության 39°—39°45′-ի միջև[2]։ Դերսիմի բարձրավանդակը զբաղեցնում է 8—10 հազ. քառ. կմ տարածություն[3]։ Գլխավոր քաղաքներն են. կենտրոնում՝ Խոզաթ (նախկին Խոզնա Երկիր), հարավային սահմանում՝ Չմշկածագ, արևելյան սահմանագլխում՝ Մեծկերտ կամ Մազկերտ, հյուսիսային կողմում՝ Օվաճուղ, հարավ-արևելքում՝ Փերի։*

Բնակչությունը.—*Առաջին համաշխարհային պատերազմից առաջ Դերսիմի բնակչությունը բաղկացած էր քրդերից, թուրքերից և հայերից, որոնք, յուրաքանչյուրն իր տոհմի կամ գերդաստանի անդամներով, ապրում էին 8—15 (մի քանիսն էլ՝ 20—35) տներից բաղկացած 150—160 գյուղակներում։ Եթե հաշվենք 155 գյուղ՝ 14-ական տնտեսությամբ և յուրաքանչյուր տնտեսությունն էլ 8 շնչից, ապա ներքին Դերսիմի բնակչությունը կկազմի 17360 շունչ։ Ամբողջ Դերսիմի բնակչությունը, քաղաքներով միասին, 1915 թ. եղել է 50 հազարից քիչ ավելի[4]։*

* Հ. Գասպարյանը, որ բնիկ դերսիմցի է, ներկա ակնարկում լայնորեն օգտագործել է իր հուշերն ու անձնական դիտումները (Խմբ.)։

1 Ղ. Ալիշան, Հայրունի, Վենետիկ, 1865, էջ 231։ «Տեղեկանք Հայոց Մեծաց», Վենետիկ, 1865, էջ 42, 258։

2 «Աշխարհի ատլաս», Մոսկվա, տե՛ս Թուրքիայի քարտեզը։ «Դերսիմի քարտեզը», ընդօրինակված անգլիական սպայակույտի (շտաբ) աշխարհագրական բաժնի կողմից 1916 թ. գծված № 2555 քարտեզից, տե՛ս «Պատմագիրք Չմշկածագի» գրքում (Բեյրութ, 1971, էջ 24—25).

3 Գևորգ Հալաջյանը (Թափառական) ցույց է տալիս գրեթե կրկնակին, Դերսիմին միացնելով Կեմախի, Երզնկայի, Քղիի շրջաններից որոշ մասեր և նրա հարավ-արևմուտքին միացնելով Տիգրանակերտի նահանգի հյուսիս-արևմտյան մասը (տե՛ս Գ. Հալաջյան, Դերսիմի հայերի ազգագրությունը, Ա մաս, «Հայ ազգագրական բանահյուսություն», պրակ 5, Երևան, 1973)։

4 Կապիտան Սելը իր պաշտոնական տեղեկագրի մեջ գրել է 65 հազար (տե՛ս «Պատմագիրք Չմշկածագի», էջ 19)։ Գ. Հալաջյանը Դերսիմի միայն հայ ու քուրդ բնակչության թիվը հասցնում է 289368 շնչի. եթե այս թվից հանենք Դերսիմի մաս չկազմող Բալուի շրջանի 51007 շունչը, կունենանք 238361 շունչ, որից հայեր՝ 88414 շունչ, իսկ քրդեր՝ 149947. սա մոտ քառապատիկ ավելացրած երևակայական թիվ է։ Օրինակ, Չմշկածագ քաղաքը, որ ծննդավայրս է, 1915 թ. ուներ 3618 շունչ հայ, թուրք ու քուրդ խառը բնակչություն, թուրքերի մեծամասնությամբ (Հ. Հ. Գասպարյան, Չմշկածագ և իր գյուղերը, «Պայքար» տպարան, 1969, էջ 92-ի աղյուսակը), իսկ Գ. Հալաջյանը գրել է 5400 միայն հայ ու քուրդ բնակչություն։

Դեռևս XVII դարի երկրորդ կեսին և XVIII դարի սկզբներին Դերսիմն ունեցել է հայկական նստակյաց հոծ բնակչություն, նրա քուրդ բնակչությունը, ըստ Ջ. Գ. Թեյլորի, բաղկացած էր բնիկներից և եկվորներից։ Այդ էին վկայում նաև ստիպողաբար քաղաքները դաղթած հայերը, որոնց պատմելով XVIII դարի կեսերից եկվոր քրդերը թափանցել են Դերսիմ և, ըստ երևույթին կառավարության դրդմամբ, աստիճանաբար զավթել են հայերի պապենական և վանքապատկան հողերը, իսկ հայերին արտաքսելուց հետո էլ սկսել են տիրել տեղացի քրդերի հողերին, որն արյունալի կռիվների տեղիք է տվել և շարունակվել մինչև առաջին համաշխարհային պատերազմը։

Բնիկ քրդերը կամ հին դերսիմցիներն ընդհանուր առմամբ կոչվում էին Սեիդանի Դերսիման, իսկ եկվորները, ըստ Թեյլորի, կոչվում էին Սեիդ-Հասանանցիներ, ըստ Լ. Լյուլեճյանի՝ Շեյխ-Հասանանցիներ։ Թեյլորի տվյալների համաձայն վերջիններիս «նախնիքը դաղթել են Պարսկաստանի Խորասան քաղաքից, նախ տեղավորվելով Մալաթիայի մոտերքը գտնվող Աղչադաղի Խարաբել վայրում, այնուհետև տեղափոխվել են Դերսիմ (գուցե այս պատճառով էլ եկվորների մի մասը կոչվում էր «Խարաբալի»)։ Բուն դերսիմցիները,— շարունակում է Թեյլորը,— սլացիկ, սև մազերով, սև աչքերով, երկար դեմքով ու երեսի թխորակ գույնով են, մինչդեռ եկվորները՝ Սեիդ-Հասանանցիները (Շեյխ-Հասանանցիները), ավելի կարճ են, ունեն կլոր ու գեղեցիկ դեմք, մյուսների նման սև մազեր, սևորակ աչքեր ու խիտ մորուք»[5]։

Դերսիմի շատ քրդաբնակ գյուղեր (հատկապես եկվոր քրդերի), թեև աղավաղված, պահում էին իրենց հայկական անունները։ Դրանցից էին, օրինակ, Աղաջուր, Գնելի, Սրբիյան (Սուրբ Օհան), Արտասպետ, Շիկոմ, Ահրիման, Պսկա Վանք, Հովեկ, Թորոս Գոմ, Եղրիվան, Սաղման, Պատուկ, Երկան Ընկուզիկ, Խնձորի, Փիրվանք, Պառվագրակ, Ազրակ, Դաշտակ, Օհանա, Ակնիկ, Թանել, Աղբաձոր, Բարդի, Գոմեր, Լորենիկ, Աղղունիկ կամ Աղձունիք, Լերդիկ, Կծու, Խաչելի, Խաչտուն, Սիրապ, Բեղաղուտ, Թաներ, Համբասման (Համբարձման), Հասութ, Ախոռներ, Հալպատ, Վարի գեղ, Կարմիր քար, Դանել, Չմպեխ, Թթենիկ, Պառավ, Ամութխա, Պռաստիկ, Սագատիկ, Կալվերիկ, Աղվես գեղ, Բսակ և այլն։

Թեյլորը նշում է, որ հայ բնակչությունը խոսում էր ոչ մաքուր հայերենով։ Լնճրղկա գյուղում 1866 թ., երբ Թեյլորը այցելել է այնտեղ, եղել են 40 տնտեսություն քուրդ և 40 տնտեսություն հայ, սակայն 40 տարի անց մնացել են չորս տուն հայ, որոնք իրենց մայրենի լեզուն շատ վատ գիտեին և գործածում էին քրդերից գաղտնի խոսելիս։ Քրդերից նրանք տարբերվում էին միայն իրենց անուն-ազգանուններով և կրոնական սովորություններով, իսկ կանայք՝ նաև տարազով։ Ըստ տեղեկությունների, Խաչք, Աղաչանուն, Կըրպո, Հանդ, Մամկուն և Սավա գյուղերի բնակիչները քրդացած հայեր էին[6]։

Դերսիմի 2 խոշոր ցեղախմբերից Շեյխ-Հասանանցիները բաժանված էին հետևյալ տոհմերի.

1. Խարաբալի կամ խարաբելի. սրանցից էլ՝ ֆերհատան կամ ֆերհատուշաղի մեծ տոհմը, որ զբաղեցնում էր Դերսիմի հարավ-արևելքում ընկած

[5] J. G. Taylor, Journey of a Tour in Armenia Kurdistan and upper Mesopotamia in the Notes of Resarched in Dersim-Dagh in 1866. „Journal of the Royal Geography Society", vol. 38, London, 1868, էջ 280—300, 319—327։

[6] Լ. Հալաջյան, նշվ. աշխ.։

Աղբակ, Գալաճուղ, Գողտնվանք, Աղրակ, Դաշտակ. Խաչտուն, Դարնոսի և Խարտիշար գյուղերը։

2. Շամ-ուշաղի. բնակվում էին հարավ-արևմտյան մասում, ընդհուպ մինչև Արածանիի ստորին հոսանքի Գոմռեշ, Աղկի, Աղլոզ, Հաստեկ և Քուրդ Աշգանի գյուղերը։

3. Սավախի. բավական մեծ տոհմ էր, որ զբաղեցնում էր Չմշկածագի և Բերդակի միջև ընկած Թթենիկ, Պառավ, Տերիդըրեժ, Գոմեր, Լորենիկ, Հայ Աշգանի գյուղերը։ Գլխավորապես զբաղվում էին անասնապահությամբ, իրենց մեծ հոտերով ամռանը բարձրանալով Բյուրակնյան լեռները։ Արտածում էին յուղ, պանիր և մսատու անասուն։

4. Յուսուֆանի. համեմատաբար փոքր տոհմ էր, դավանանքով՝ շիի։ Բնակվում էր Մեծկերտից (Մաղկերտ) արևմուտք, Աղդադ և Բակեր գյուղերում։

5. Գալանի կամ գեյլանի. այս տոհմը զբաղեցնում էր Դերսիմի հարավ-արևելյան մասը։ Դավանանքով սրանք եզիդիի և ալևիի խառնուրդ էին։ Հասանանցիների մեծ շեյխը ժառանգաբար այս ցեղից էր լինում և մեծ հեղինակություն ուներ ամբողջ Դերսիմում։

6. Փիլվանի կամ փիրվանի. սրանք ավելի հին գաղթողներն էին և զբաղեցնում էին Խողատի շրջանի Գորավիր, Ջեմզելի, Երնտիկ, Կարամեշե, Վերին Աղզունիկ և Բասեան գյուղերը, տիրելով նաև Փիրվանք վանքի հողերի մի մասին. խոսում էին կուրմանջի լեզվով։

Բնիկ դերսիմցիները կամ սեիդանիները կազմված էին հետևյալ ցեղերից.

1. Խոջանի. ամենամեծ և իշխող ցեղն էր, որը բռնում էր բուն Դերսիմի տարածության գրեթե կեսը՝ Ամոթխա և Արծաբերդ կենտրոններով և Աղգաձոր, Ռալկա, Գանկըռող, Գենկեռի, Գնելի, Դալըքո, Թաղար, Լերդիկ և այլ գյուղերով։ Այս ցեղից բաժանվել էին Խրղանի և վերին ու ներքին Աբասանի տոհմերը, որոնցից առաջինը բնակվում էր Արծաբերդ, Աղգաձոր և Գանի գյուղերում, երկրորդը՝ արևելքում՝ Տղդադո կենտրոնով, իսկ երրորդը՝ հարավ-արևելքում՝ Աղզունիկ, Ընճըղկա, Սուրբիան, Հավշաքար, Փեյիկ գյուղերում։ Աղզունիկում 1915 թ. եղել է 15 տուն ալևի (ղզլբաշ) քրդեր և 5 տուն հայեր, իսկ Երկան Ընկուզիկում՝ 25 տուն քուրդ և 8 տուն հայ[7]։

2. Լաչինի. բնակվում էին Դերսիմի կենտրոնական մասում։

3. Գարիկի. ըստ իրենց ավանդության, Գարեգինի որդիք։ Զբաղեցնում էին Դերսիմի կենտրոնական մասից հյուսիս ընկած տարածությունը և Հալվորի շրջանն ու Տուժիկի ներքին մասը, որ ամենաանառիկ վայրն էր։ Ժառանգաբար այս ցեղից պետք է լիներ բուն դերսիմցիների գլխավոր սեիդը, որը միակ իրավասոր անձն էր միջցեղային կռիվները կասեցնելու և հաշտեցնելու ժամանակ։

4. Գևանի կամ Գևո-ուշաղի. իրենց ենթադրությամբ Գևորգի որդիք։ Բնակվում էին Մնձուրից հարավ, Օվաջուղի հարթավայրում։

5. Կուռե-շահնի (Շահինի որդիք). բնակվում էին Դերսիմի հյուսիս-արևելյան մասում և Գութուդերեի շրջանում։

6. Ռըշկանի, ըրսկանի կամ ռեսկ-ուշաղի (ռեսի որդիք). բնակվում էին

---

7 Լ. Կ. Լյուլեճյան, Տերսիմ, «Հայրենիք» օրաթերթ, Բոստոն, 5 սեպտեմբերի, 1943։

արևելյան և հյուսիս-արևելյան Դերսիմում, Կուռե-Շահնցիների հետ խառը: Հետևում էին քարթմանյան կիսաեղիդական աղանդին:

7. Մամկի. ապրում էին Մշո, Քղիի և Դերսիմի սահմանագլխին: Բավական ուժեղ տոհմ էր, պահպանում էր քրիստոնեական և հեթանոսական շատ ավանդույթներ:

Կային նաև հետևյալ տոհմերը, որոնց ծագումը, հավանաբար, քրդական էր.

ա. Հայտարանցիք. բնակվում էին Մեծկերտի և Ղըզըլքիլիսեի շրջանում:

բ. Բախտիարի. ապրում էին Մնձուր լեռան փեշերին ցրված Բագրատ, Գասման (մեծ ու փոքր՝ միասին 20 տնտ.), Գըզըլմեզրե, Գըզըլգոմ, Գըզըլդաղ գյուղերում:

գ. Ալանի. բնակվում էին Մնձուր գետի ստորին հոսանքի ձախ ափին: Փոքր տոհմ էր:

դ. Սուրանի. բնակվում էին Դերսիմի հարավ-արևելյան ծայրամասում:

ե. Սըլվանի. ապրում էին Փերիի և Ղըզըլքիլիսեի միջև:

Մինչև XIX դարի վերջը Դերսիմում բնակվում էր նաև Միրագյանների հայ իշխանական տոհմը, որի սեփականությունն են եղել Հալվոր, Պառվագրակ և Միրագ գյուղերն իրենց շրջակայքով: Սրանք հաճախակի կռիվներ են մղել եկվորների հետ՝ իրենց սեփականությունն ու կյանքը պաշտպանելու համար:

Ինչպես երևում է տեղանուններից, եկեղեցիների ավերակներից և այլ բազմազան հայկական հուշարձաններից, Դերսիմի բարձրավանդակում մի ժամանակ գերակշռելիս են եղել հայերը: Սակայն օսմանյան կառավարությունը ամեն կերպ ձգտել է իսլամացնել կամ ցրել անառիկ այդ վայրում համախմբված հայ զանգվածը, ոչնչացնելով նաև նրանց հոգևոր գանձերը: Այս կապակցությամբ էլ կառավարությանը ձեռնտու էր Շեյխ-Հասանանցիների կամ Խարաբալիների մուտքը Դերսիմ, որոնք տիրանում էին հայկական հողերին ու գյուղերին, հատկապես վանքապատկան հողերին, ըրում վանական միաբանությունները: Այսպես, Չմշկածագի Ագարակ գյուղին, որը հայ գրչության օջախներից մեկի՝ Ս. Նշան Կարմիր Վանքի սեփականությունն էր, վերջնականապես տիրել էր Յերատանի տոհմապետ Դիաբը: Այստեղից Չմշկածագ էին գաղթել Խժիկյան, Հովսեփյան, Մելիքյան, Մալխասյան, Մեծիկյան և այլ ընտանիքները, այնպես որ 1915 թ. հազիվ 8 տուն հայ էր մնացել այդ գյուղում: Դեռևս 1800-ական թթ. և դրանից էլ առաջ նույն գյուղից Չմշկածագ էին գաղթել Անմահյան (Էթմեքճյան), Դավթյան և Գասպարյան (իմ գերդաստանի) ընտանիքների պապերը: Միաժամանակ Խարտիշարից, Սուրբիանից և այլ գյուղերից բավական թվով հայ ընտանիքներ ցրվել էին դաշտային հայ գյուղերում:

Եկվոր քրդերի տիրապետության դեմ գրավված գյուղերի հայ բնակչության կողմից անընդհատ բողոքներ էին գրվում կառավարությանը, իրենց պապենական հողերեն ապօրինաբար զավթվելու կապակցությամբ, սակայն տեղական կառավարությունը չլսելու էր տալիս կամ գործը հանձնում էր մի որևէ ատյանի «քննության», որը, ըստ հրահանգի, քնեցնում կամ տարիներ ձգձգելուց հետո անհետևանք էր թողնում[8]: Պատահում էր, որ գործը փոխադրվում

8 Տե՛ս Գ. Երևանյան, Չարսանճագ, Բեյրութ, 1956, էջ 279—293 և 342—392:

չր նահանգային դատարան, և հայերը շահում էին իրենց դատը։ Սակայն այս պարագայում գավառի կառավարության ղեկավարը հայտարարում էր, որ ինքը տվյալ հողամասը կամ գյուղը նվիրել է այսինչ քուրդ տոհմապետին։

Նման քաղաքականությամբ Օսմանյան կառավարությունը մի կողմից քրդերի միջոցով հայերին ունեզրկում էր, իսկ մյուս կողմից, քուրդ ցեղապետներին հայերի հաշվին նվերներ տալով ձգտում էր կանխել ապստամբության վտանգը։

**Զբաղմունք և հողատիրություն.**— *Հողն ու անտառները (արտաքին, մասամբ էլ ներքին Դերսիմում) պատկանում էին ցեղապետներին կամ տոհմապետներին։ Յուրաքանչյուր ցեղապետ գրավել էր մեկից ավելի գյուղեր, որոնցում տեղավորել էր իր շառավիղներին (սնպուհներին). մնացած ժողովուրդը, որ հողի մշակն էր, ծառայում էր սրանց որպես կիսնորդ կամ ճորտ և պահանջի դեպքում՝ կռվող ուժ։ Շեյխ-Հասանանցիները (եկվորներ) գրավել էին նաև վանքապատկան հողերը։ Օրինակ՝ Ֆերատանի տոհմի աղդու տոհմապետ Դիաբը գրավել էր ամբողջ Ագրակ գյուղը, զավթելով նաև Կարմիր Վանքի հողերի մեծ մասը (մոտ 200 հեկտար), իսկ գյուղի բնիկ 8 տուն հայերն էլ իրենց պապենական-սեփական հողը մշակելու համար Դիաբից թույլտվություն պետք է վերցնեին, բերքի մեկ հինգերորդը տալով հանդերձ։ Բացի այդ, Դիաբը զավթել էր նաև իր սահմանից շատ հեռու, դաշտային մասում գտնվող Խաչտուն հայաբնակ գյուղը, որի բնակիչների մի մասը ցրվել էր, մնացել էին 12 տնտեսություն, որոնք և՛ իրենց հողն էին մշակում, և՛ Դիաբի զավթածը։ Դիաբի հորեղբայր Խարաման աղան տիրել էր Խարտիչար գյուղի և վանքի հողերի մեծ մասին և ժառանգ էր թողել իր որդիներին՝ Քիչիկին ու Մըչեին։ Ընձըղկա գյուղը Երկան Ընկուզիկի հետ պատկանում էր Սեիդանիների Վերին Աբասան աշիրից Զեյնո Զադե Մսդաֆային ու եղբայրներին։ Կալվերիկ ու Փետրան սահմանակից գյուղերին տիրել էր Սուլեյման աղան (Խոջանի)։ Գնելի գյուղի մի մասը Բեքոյինն էր, իսկ Քորմշկան գյուղը՝ երկու եղբայրներինը (Խողանի)։ Ամութխան իր շրջապատով Սեիդ Իբրահիմին էր (Խոջանի) պատկանում։ Նա ամենաուժեղ ցեղապետն էր՝ Իդարա մականունով։ Հալվորը, Միրադյանների ցրվելուց հետո, ամբողջությամբ պատկանում էր Սեիդ Րիզային։ Գերիկի Դաշտակ գյուղը Խըդոյինն էր (Լաչինի), Թադարը և Օվաջուղից որոշ հողամաս՝ Խչտիկ Ահմեդինը (Խոջանի), Բեզաղուտն ու Աղզունիկը Սեիդ և Ալի Կեկոներինն էին (Ֆերատանի) և այլն։*

*Արտաքին Դերսիմի հատկապես եկվոր բնակչության հիմնական զբաղմունքը հողագործությունն էր, բացի Շավախի ցեղից, որը բազմաթիվ հոտեր ուներ (սրանց մի մասն էլ Դերսիմի սահմաններից դուրս էր՝ Արածանիի ձախ ափին) և զբաղվում էր անասնապահությամբ։ Կային խոպան հողակտորներ, որոնք գյուղացին կարող էր մշակելի դարձնել, բայց չէր մշակում գյուղապետի կամ տոհմապետի կողմից հափշտակվելու ահից։ Հողի ընդերքում թաքնված գանձն անգամ գյուղապետին էր պատկանում. գտնողը պետք է լրիվ հանձներ նրան։*

*Գյուղացին կարող էր անասուն պահել ցանկացած քանակությամբ, իսկ անտառից կարող էր օգտվել միայն գյուղապետի, ցեղապետի թույլտվությամբ։*

*Ներքին դերսիմցիների հիմնական եկամուտն անասնապահությունից էր։*

*Այս մասում վարելահողը շատ քիչ էր՝ խիստ կտրտված ռելիեֆի պատճառով։ Ձմեռը ցրտաշունչ ու երկարատև լինելու հետևանքով աշնանացան գրեթե չկար, իսկ գարնանացանը վաղահաս և բերքատու դեղին կորեկն էր, որոշ չափով՝ գարին և չնչին քանակով էլ ցորենը։ Գրաստներից գործածական էին էշն ու ջորին, որ քչերն ունեին։ Այստեղ էլ հողի մեծ մասը ցեղապետինն էր, բայց անտառները համայնական էին, որից օգտվում էին բոլորը։ Խոշոր եղջերավոր անասուն քիչ էին պահում, իսկ մանր եղջերավորից միայն այծ ունեին։*

*Սակայն, ինչպես նշել ենք, ներքին դերսիմցիների զբաղմունքներից մեկը ասպատակությունն ու ավարառությունն էր, որը կազմակերպում էին ցեղի ավագները։*

Լեզուն կամ բարբառը.— *Բուն դերսիմցիների (Սեիդանիների), Շեյխ-Հասանանցիների և մեր իմացած քրդերենի՝ կուրմանջի լեզվի կամ բարբառի միջև որոշ տարբերություն կար։ Քրդական ցեղերը, բացի եզիդիներից, իրենց «կուրմանջ» են անվանում։ Բնիկ և եկվոր քրդերի լեզվի մեջ կան Ջաղաքի և Տըմըլքի բարբառները։*

*Ստորև տալիս ենք Դերսիմի բնիկների, եկվորների և կուրմանջիների մի շարք բառերի համեմատական նմուշներ՝ որոշ գաղափար կազմելու համար Դերսիմի բնակչության լեզվի մասին։*

| Հայերեն | Դերսիմի Սեիդանի | Շեյխ-Հասանանի | Կուրմանջի |
|---|---|---|---|
| *Ականջ* | *գյարըկ* | *գուհ* | *գուհ* |
| *Աղբյուր* | *բուլախ, չեշմէ* | *կանի* | *կանի* |
| *Ամպ* | *դուման* | *ավր* | *ավր* |
| *Այծ* | *բըզի* | *բըզըն* | *բզըն* |
| *Աստված* | *հախօ* | *խօդէ* | *խուադէ* |
| *Արև* | *առօ* | *ռօ* | *ռօ* |
| *Արյուն* | *դօն* | *խուն* | *խուն* |
| *Բաղուկ (թև)* | *բօզի* | *փիյ* | *մըլլ (Ուրֆ. փիյ)* |
| *Բեռ* | *բօշը* | *բէր* | *բար* |
| *Բուրդ* | *ռա̈շօ* | *հըրի* | *հըրի* |
| *Գայլ* | *վալք* | *գուր* | *գուր* |
| *Գառ* | *գարակ* | *բա̈րխօ* | *բարխ* |
| *Գարի* | *ջավլ* | *ջհա̈* | *ջա̈հ* |
| *Դու* | *թօ* | *տու* | *տու* |
| *Ես* | *կա* | *կօ* | *գա* |
| *Երկինք* | *հավէ* | *ազմէն* | *ազման* |
| *Ձավակ* | *տօման* | *դա* | *դառ* |
| *Ջարնել* | *փրոդէ* | *խսթըն* | *լէ-դան (Ուրֆ. լէ-խըսթըն)* |
| *Ձենք* | *ճաք* | *թֆանկ* | *ճաք (Ուրֆ. սելահ)* |
| *Ընկնել* | *քավօ* | *քաթօ* | *քաթըն* |
| *Թաղիք* | *քաշա* | *կուլապ* | *կուլաբ (Ուրֆ. կուլավ)* |
| *Թան* | *դօ* | *դէու* | *դա̈ու* |
| *Թիկունք* | *փուշտ* | *փոշտ* | *պըշտ* |
| *Լեռ* | *քօյ, սար* | *ճէէ* | *ճիյա* |
| *Լուսին* | *ռոստօ* | *հէվ* | *հիվ* |
| *Խաբել* | *խապնա* | *խափաններն* | *խապանտըն* |

| | | | |
|---|---|---|---|
| Խոսել | խազի-քիմա | խըսէկըն | խարարդան (Ուրֆաշորկըրըն) |
| Խոտ | վաշ | գի՛ | գի՛յա |
| Ծեր | քոք | փիր | կալ |
| Կաթ | սըտ | շիր | շիր |
| Կապերտ (գունավ.) | քիլիմ | չէչիմ | չէչիմ |
| Կապերտ (հորկ.) | աստոր | փալաս | ջուլ |
| Կով | մանկա | մանկա | ճելէաք |
| Կրակ | ատր | աար | ագըր |
| Հագնել | բրա-քէրդօ | սէր-խօ-կըրըն | լը-խօ-կըրըն |
| Հարս | վէյվէ | բուք | բուք |
| Հաց | նօն | նան | նան |
| Հոտ (ոչխարի) | հավդէ, սուրի | կարի | կէարի |
| Ձի | օստոր | հէասպ | հասպ |
| Ձմեռ | զմըստօ | զըոստան | զվըստան |
| Ծամփա | ռա՞ | ռէ | ռէ |
| Ճրագ | չըչա | ճըրա | ճըրա, չըրա |
| Մածուն | մաստ | մաստ | խատըղ |
| Մաղ | փրաժէն, բէզընգ | բէզընգ | բէժընկ |
| Մարդ | մարդէմ | մէրի | մերըկ |
| Յուղ | ռօն | ռուն | ռուն |
| Նայել | նիյան | նհեռըն | նհեռըն |
| Նոր | նով | նէվ | թէզէ |
| Շուն | փրէն | գրաս | կրաս |
| Ոլորել (թել) | թադի | պաադի | պատան |
| Ոսկոր | օստա | հէաստէ | հաստու |
| Ջորթան | թեռինէ | թօրախ | չորտան |
| Պանիր | փէնիր | փէնտիր | պէանէր |
| Պատմել | խըսէ-քէղըն | խըսէ-քըըն | խըսէ-կըրըն |
| Ջուր | ար, աուվ | ա՞վ | ա՞վէ |
| Սառը | սա՞ար | սօար | սար |
| Սև | սյավ | ռէաշ | ռաշ |
| Սպիտակ | սըպի | սըպի | գյաուր, սըպի |
| Վազել | վազտան | ռէավըն | ռէավ |
| Տանել | բէրդօն | բըըն | բըըն |
| Տաք | տաս | տ՛ա | դա՛ |
| Տուն | չէմ | խռանի | մալ |
| Ունենալ | հէաստան | հէարուն | հարուն |
| Փայտ | քօլի | տար | տար |
| Փոքր | խչըք | ճուճըկ | ճուճըկ |
| Քույր | վայէ | խոյէ | խուճկէ* |

Հայկական վանքերը և հայ գրչության օջախները.— Դերսիմի տարածքի վրա փռված էին հարյուրից ավելի հայկական եկեղեցիների ու վանքերի ավերակներ։ Այդ վանքերից մի քանիսը եղել են գրչության օջախներ. այնտեղ գրված բազմաթիվ ձեռագրերից մեզ հասել են մի քանիսը։ Ստորև տալիս ենք այդ վանքերի անունները՝ նրանցում գրված ձեռագրերի ցուցակով։

1. Երկան Ընկուզիկ կամ Երկան Կուզիկի Ս. Կարապետ վանքը, Ս. Հարության տաճարով, որը, ըստ Լ. Լյուլեճյանի, կառուցվել է հայոց ՆԼԴ (975) թ.։ Այնտեղ գրվել են.

ա. «Յայսմաւուրք». գրել է Մինաս գրիչը հայոց ՊՁԴ (1435) թ.։ Ձեռա-

* Դերսիմի բարբառը ստուգել ենք բնիկ դերսիմցիներ, բրդագետներ Նշան Տերտերյանի և Մարգարիտ Ղարիբյանի հետ։ Կուրմանջին ստուգել է պրոֆ. Հաջիե Ջնդին։

գիրը վանքից ստացել է Աբրահամ եպիսկոպոսը հայոց ՊԴԴ (1445) թ. և տարել Երուսաղեմ, որտեղ գտնվում է այժմ[9]։

բ. «Աւետարան». գրել է Գրիգոր Կուզեցին հայոց ՊՁԱ (1432) թ.։ Այս ձեռագիրը ևս գտնվում է Երուսաղեմում։

գ. «Աւետարան». գրել է Դավիթ գրիչը, որը երկանընկուզեցի Սահակ քահանայի որդին է եղել, ինչպես նշվում է Մատթեոսի ավետարանի վերջում.

(«Աւարտեցաւ սա յամսենի
Ի քսան և ինն Յունիսի,

. . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . .

Արդ ես Դաւիթս, որ գրեցի
Զաւետարանս Տեառն Յիսուսի,
Զի կորուստի զփառս հայրենի,
Բայց գրեցաւ սա յանապատի,
Որ Ընկուզեաց անուն կոչի։

. . . . . . . . . . . .

Ի թւիս Հայոց Մեծացն ՊՁԳ»)։

Այս ավետարանը պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանում։

դ. «Պատմութիւն Յովասափու և Բարաղամու Առաքելի Բաղիշեցւոյ».

(«Ի թւականիս Հայոց ութ հարիւր էր,
Ութսուն ւ երեք ի նոյն յարաբարդեալ էր (1434)։

. . . . . . . . . . . . . . .

Ես՝ Առաքել նուաստ ոգի,
Մեղաւք լցեալ Բաղըշեցի...»)։

ե. «Ներբողեան Առաքել Վարդապետէ». («Յօրինեցաւ ճառս ի թւականիս Հայոց ՊՁԴ (1435) ի նորաշէն յանապատիս Երկայն-Ընկուզեաց... ի գաւառն Յաղմընայ... շինողի ճառի Առաքել վարդապետի»)։ «Ի նորաշէն յանապատի» բառերը ապացուցում են վանքի վերակառուցումն Առաքել Բաղիշեցու ջանքերով, հավանաբար, 1430-ական թթ.[10]։

զ. «Աւետարան» («Ես Յովհաննես եպիսկոպոս... գրեցի... լաւ և յընտիր աւրինակէ. գրեցաւ ի թվին Ռ եւ Ծ (1601)... Ի վանքն Երկան-Ընկուզեցի»)[11]։

2. Կարմիր վանք կամ Կարմրակ Ս. Նշան, Դիաբի գավթած Ագարակ գյուղին կից, հռչակավոր է եղել իր ուսյալ եկեղեցականներով. («Խումբ առեալ դասի քահանայից, սարկաւագաց, դպրաց և կղերականաց մատուցանէին բուրումն անուշահոտ խնկից և կինամոնաց»)[12]։ Այնտեղ գրվել են.

ա. «Մաշտոց», գրված հայոց ՊՁԲ (1433) թ., վանքի մեզ հասած ձեռագրերից ամենահինն է, գրել է Գրիգոր գրիչը։ Պահվում է Մաշտոցի անվան Մատենադարանում[13]։

9 Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Ս. Խաչիկյան, մասն Ա, 1955, էջ 449։

10 Նույն տեղում, էջ 426, 439, 442, 453։ «Հանդես ամսօրյա», 1905, էջ 210։

11 Գ. Սրվանձտյանց, Թորոս Աղբար, հատ. Բ, Կ. Պոլիս, 1885, էջ 359—372։

12 Տրդատ եպիսկ. Պալյան, Ցուցակ վանորեից, տե՛ս «Լույս» շաբաթաթերթ, Կ. Պոլիս, 3—16 հունիսի, 1906, էջ 569։

13 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 448։

բ. «Ճանձարան», գրված Մկրտիչ գրիչի ձեռքով։ Գիրքը եղել է Կարնո Լկեղեցում («Արդ գրեցաւ սա ի նաՀանգիս Փռիգիոյ, ի գաւառս Երապօլեաց, որ այժմ մականուամբ կոչի Չմշկածագ, ի Համանուանադրութիւն Չմշկիկ ՅովՀաննէս Թագաւորի։ Արդ գրեցաւ սուրբ տառս ի թուականութեանս մերում ՊՁԵ (1436) ձեռամբ... անարՀեստ Մկրտչի սուտանուն կրօնաւորի»)[14]։

գ. «Մաշտոց ձեռնադրութեան, որ կոչի երիցատետր», «գրեալ ի Չմշկածագ, ի վանքն Կարմիր յամի ՊՂէ» (1448 թ.)։ Գ. Վ. Սրվանձտյանցը գտել է Արղանայի «Բարձրահայաց Ս. Աստուածածին» վանքի (Սասունցի-Դավիթ էպոսի միջի «Մարութայ բանցըր սուրբ Աստուածածին վանք») մագաղաթյա 200 Հին ձեռագրերի մեջ, երբ այցելել է այնտեղ 1878 թ., որպես կառավարության և Կ. Պոլսի Հայոց Պատրիարքարանի կողմից ուղարկված ներկայացուցիչ՝ Հայկական գավառներում Հայերի և նրանց դպրոց-եկեղեցիների Հաշվառում կատարելու Համար։

դ. «Շարական». գրողն է Վարդանիկ կրոնավորը («Արդ գրեցաւ շարակնոցս, որ կոչի ԽԼԿՅԻ... ձեռամբ Վարդանիկ... կրաւնաւորի ի յանապատս Կարմիր Վանքի ի թուականիս Հայոց ՌՀԴ» (1625 թ.)։

ե. «Աւետարան...» («գրեցաւ Ս. Աւետարանս ի թուա... Հայոց ՌՃԼԳ (1684) ձեռամբ... Առաքել աբեղիս... ի Չմշկածագ ի Կարմիր Վանք»)։

Այս վերջին երկու ձեռագրերն էլ եղել են Չմշկածագի եկեղեցում։

զ. «Աւետարան», գրողն է Վարդան գրիչ Հայոց ՌՀԲ (1623) թ. («...Ձեռամբ աբեղայի Վարդանի, որ բարեաց խիստ եմ Հեռի...»)[15]։

է. «Շարական», նկարազարդված, մագաղաթյա, գրել է Գասպար գրիչը[16]։

ը. «Աւետարան» («Գրեցաւ ի Չմշկածագ, ի վանքն Կարմիր յամի ՊՂէ» 1448)[17]։

թ. «Աւետարան», գրչագրված Չմշկածագի Ս. Աստուածածին եկեղեցում. եղել է Դենտիլի եկեղեցում։ Գրիչն անՀայտ է[18]։

ժ. «Աւետարան», մի ավետարան ևս գրված Չմշկածագի Ս. Աստվածածին եկեղեցում («Եւ այս գրեցաւ Սուրբ Աւետարանս ի թւականութեան ազգին Հայկայ ՋԻԳ (1474), զոգ ձեռամբ անիմաստ ազգի եւ եղկելիս քոյ Մկրտիչ Երիցոյս խոտան եւ վատթար գրչի... եւ արդ գրեցաւ ի քաղաքս Չմշկածագ ի դուռն Սուրբ Աստուածածնիս...»)։

Հայտնի է, որ այս (25,5×17,5 սմ ծավալով) մանրանկարներով գիրքը գտնվում է Գերմանիայի Թյուբինգեն քաղաքի Համալսարանի գրադարանում, Հայերեն ձեռագրերի 107 Համարի տակ։

3. Խարտիշարա Ս. Կարապետ վանք։ Այս վանքում ևս գրվել են բազմաթիվ ձեռագրեր, որոնցից մեզ են Հասել.

ա. «Մաշտոց», գտնվում է Վենետիկում, գրված է 1434 թ. («գրեալ

---

14 Տ. Պալյան, նշվ. աշխ., էջ 569։

15 Գ. Սրվանձտյանց, նշվ. աշխ.։

16 Այս «Շարականը» մեր ընտանիքի սեփականությունն էր, գնել էր իմ պապի պապը՝ Գասպարը, որպես իր եղբորորդու գրած։ Տառանշաններից Հիշում եմ ՌՃԿ. ուրեմն գրվել է մոտ 1710 թ.։

17 Տ. Պալյան, նշվ. աշխ.։

18 Նույն տեղում, էջ 861—862։

ի վանքս Խարտիշարայ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին, ձեռամբ Ստեփան Կրօնաւորի»)[19]։

բ. «Մայր Մաշտոց» («գրեալ Ս. Անապատն Խարտիշարայ, Ջմշկածագ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Կարապետին եւ Ս. Սարգսի զորավարին ի թուա. Հայոց ՋԽԶ, (1497) Աւգոստոս ամսոյ ԻԲ (22) առ ոտս Ստեփանոս քաջ րաբունապետին եւ իւր եղբաւրորդոյն Յովհ. Հայրապետին... յիշեցեք... զԿիրակոս կրաւնաւոր փծուն գրիչս»)։

Այս Մաշտոցը եղել է Կեմախի «Ս. Թադէոս վանք կամ Աւագ վանք և Լուսավորիչի անապատ» կոչված վանքում. գրի է առել Գ. Սրվանձտյանցը, 1879 թ.[20]։

գ. «Աւետարան» («...գրեցաւ սուրբ Աւետարանս և թուա. Հայոց ի ՋՂ ամին (1541), ձեռամբ... Յովսեփ եպիսկոպոսի ի նահանգիս Ջմշկածագի ի վանքս Խարտիշարայ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետի և սրբոյն Սարգսի զորավարին ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Տէր Կարապետ եպիսկոպոսին, որը փոխեցաւ առ Քրիստոս և ի հայրապետութեան Վաղարշապատոյ սուրբ էջմիածնայ Տեառն Գրիգորիսի, եւ միւս հայրապետութեան Սիսոյ Տէր Սիմէոնի...»)։

Այս ավետարանը եղել է Խարտիշարի սահմանակից Հաղթուկ գյուղի եկեղեցում[21]։

4. Հալվորի և Պառվագրակի վանքեր։ Հալվորի վանքը միակ կանգուն վանքն էր 1915 թ.։ Վանքի մեծ գերեզմանոցում եղած բազմաթիվ տապանաքարերի մեջ ամենաուշագրավն է եղել առյուծակերպ, մարմարյա բարձր տապանաքարը[22]։

Պառվագրակի վանքից մեզ հասել են երեք ձեռագիր.

ա. «Գանձարան և տաղարան» («...Գրեցաւ տաղերս ձեռամբ անիմաստ գրչի սուտանուն Աստուածատուր դպրի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, ի յանապատս, որ կոչի «Պառւագրակ, ի թուա. ՊՀ» (1421)։ Եղել է Սեբաստիայի Ս. Նշան վանքի սեփականությունը։

բ. «Հարանց վարք». գտնվում է Մաշտոցի անվան Մատենադարանում։ Ստորև բերում ենք հիշատակարանը՝ խիստ կրճատված.

«...Յազքանազեան մեծ տումարի,
Հայոց Մեծացս թուականի,
Երկեակ քառիցս հարիւրի,
Վեց տասանց և ութ աւելի, 1419,
Աւարտ եղեւ յայսմ տարի,
Որ Հարանց վարք սա յորջորջեալ,
Ձի զվարս սուրբ հարցն պատմեալ։ Ստացող՝ Յովանէս։
Ես Յովանէս սիրող բանի,
Որ եմ ի վանս Պառւագրակի,

19 «Ժ<ruby>Ե</ruby> դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 447։
20 Գ. Սրվանձտյանց, նշվ. աշխ.։
21 Նույն տեղում, էջ 364—370։
22 Հ. Գասպարյան, նշվ. աշխ., էջ 49։

Ի դուռն սուրբ Կարապետի,
Ըպդիրքս, որ Հարանց վարք կոչի,
Ինձ յիշատակ զսա էդի......

Զկաղմող սորայ՝ զՍարգիս սուտանուն աբեղայ, աղաչեմ յիշեալ յաղօթս ձեր»[23]։

գ. «Աւետարան», մագաղաթյա, եղել է Գեոկթեփե գյուղի եկեղեցում («...Գրեալ է ի թւ. ՋԳ (1454) ի վանս Պաուագրակ ընդ հովանեաւ սուրբ Նշանիս և սուրբ Կարապետիս և սուրբ Սարգսի զօրաւարին... ձեռամբ Կարապետ հայրապետին... յիշեցեք գյամաւրէն միաբանութիւնն սուրբ Կարապետին զհնգետասան կրաւնաւորին, զերծս ղտղայս, զսարկաւագունք եւ գործաւորքս Անապատիս, Հալւորի վանուց...»)[24]։

5. Կողուց Ս. Լուսաւորիչ վանք։ Հիմնահատակ կործանված և տեղն անհայտ այս վանքը Տրդատ եպիսկ. Պալյանի հավաստմամբ եղել է Չմշկածագում և, ըստ հիշատակարանների, հավանաբար Կարմիր Վանքի մոտերքը։ Այս վանքից մեզ հասել է «Ճառընտիր Տօնական» և մի «Աւետարան», որոնց հիշատակարաններից բերում ենք քաղվածքներ.

«...Որ եդ կարողութիւն հասանել ի յետին գիծ Ոսկեփոր Տաւնականիս, որ կոչի Կողունց Վանք, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին եւ սուրբ Նշանացն Քրիստոսի։ Յառաջնորդութեան Յակոբայ րաբունապետին։ Արդ գրեցաւ սա ձեռամբ Կարապետի և անպիտան գրչի յամի ՊՀԷ (1428) թուականի տոմարի»։

«... Եւ ես յոգնամեղս եւ փցունս ի գրչաց Վարդան աբեղայ, կատարեցի ըստ իմում կարի... շնորհօք եւ ողորմութեամբն Աստուծոյ ի թուականիս ՋԺ (1461) ամի ամսեանն Մահեկի»։ «Արդ եղև սկիզբն սորայ, ի վանս, որ կոչի Կողուց, ընդ հովանեաւ սուրբ լուսավորչին, եւ Կարմրուկն սուրբ Նշանի, որոյ խնամօքն աւարտեցի...»[25]։

6. Գուրգանա կամ Գուրգանաց վանք։ Կառուցված է եղել Բերիքդաղ լեռան կողին, Չմշկածագից հյուսիս, բնիկ քրդերը այն կոչում էին «Գուրգանա Վանք» կամ «Ջիարաթէ Գուրգանէ»։ Վանքի շրջակա գյուղերն են՝ Խաչելի. Բղուանք, Պետոյին Մըրղէն և Թլակ։ Ըստ ավանդության այս գյուղերի քրդացած հայ բնակիչները հետևում էին շիի կամ ալևի աղանդին և պատկանում էին Գարիկի կամ Գարիկ-ուշաղի (Գարիկի որդիք) աշիրին, ոչ մի իսլամական աղոթք չգիտեին, ոչ էլ աղոթատեղի ունեին։ Նրանց պաշտամունքի առարկան վանքի մնացորդ մատուռն է եղել՝ կառուցված Հալվորի վանքի ներքին տաճարի ձևով։

Մատուռի մուտքի անդուռ կամարի վերևում լայն քարի վրա մեծ տառերով, խորաքանդակ, գրված է եղել. «Կառուցաւ զեկեղեցիս արդեամբ Աւետիք Աբեղայի, որ եկեալ ի Չմշկածագէ ի Կարմիր վանուց, թուին Հայոց ՌՃԼԴ» (1685)։ Այս աբեղան պետք է լինի Ավետիք Եվդոկացին (1657—1711), որը աբեղա է ձեռնադրվել 1681-ին և կարգվել Սեպուհ լեռան Ս. Հակոբի վանքի

23 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 231 և 267։
24 Գ. Սրվանձտյանց, նշվ. աշխ.։
25 Տ. Պալյան, նշվ. աշխ., էջ 569։

առաջնորդ[26]։ Վանքին մոտիկ է եղել գերեզմանոցը, մասամբ անընթեռնելի արձանագրությամբ տապանաքարերով։

7. Սուրբ Էջան եկեղեցի կամ վանք։ Չմշկածագից ոչ հեռու Սուրբիան գյուղի մոտ գտնվող ավերակն էր։ Եկեղեցու կառուցվածքը, ըստ Ջ. Թեյլըրի, Սա-Գետիկի եկեղեցու նման է եղել և կանգուն է մնացել մինչև 1866 թ., իսկ Սա-Գետիկը՝ մինչև 1915 թ.։ Ըստ գյուղի բնակիչների և 1915 թ. այնտեղի տեր Սուլեյման աղայի հովանավորությամբ ազատված հայերի պատմածի, վանքի ավերակը («Սուրբ Հովհաննես» անվամբ) քրդերի մոտ պաշտամունքի վայր էր. այնտեղ ուխտ են գնալիս եղել նաև հայերը։

Հ. Քյուրդյանն իր «Երիզա» գրքում (էջ 281) գրում է, որ 1314 թ. ոմն Կարապետ գրչի կողմից մի ավետարան է նվիրվել այս եկեղեցի-վանքին։ Հետևաբար այն պետք է կառուցված լինի 1300-ական թթ. կամ ավելի վաղ։

Բացի այս Սուրբ Էջանից եղել է մի այլ Սուրբ Էջան՝ Չմշկածագի հյուսիսային սահմանում։ «...Յարևելից կողմն Ագրակն է և Պաւղանն, յարևմտից դէհն՝ Սուրբ Էջանն...»[27]։

Չմշկածագից հյուսիս-արևմուտք ընկած Ս. Թորոս (թրք. Սիփթորոս) գյուղախմբի մեջ կար Վանք գյուղը, որն ուներ 5 տնտ. իսլամացած հայ բնակչություն։ Այստեղ կային 2 վանքերի ավերակներ, ուր ուխտագնացություն էր լինում։ XVIII դարի II կեսին իսլամացված Ռապատ հայկական գյուղի Ս. Աստվածածին եկեղեցում գրվել է մի ավետարան, բայց գրողն իր անունը չի հիշատակել («...գրեցաւ սուրբ Աւետարան ի թուա. Հայոց ՌԽԹ (1600) ամի, դիւղաքաղաքն Ռապայ. ի դուռն սուրբ Աստուածածնի և սուրբ Վասիլ իշխանին...»)։ Այս ավետարանը եղել է Փերիի եկեղեցում[28]։

Վերոհիշյալներից բացի Չմշկածագի շրջակայքում կային հետևյալ ավերակ վանքերը. 1. Ս. Ջորավոր, Օձգեղի մոտ. 2. Երեք մանկունք, Պռաստիկի մոտ. 3. Վասիլկա վանք, որ նաև Վասկավան գյուղի եկեղեցին էր. 4. Խարավանք Թուրքական գյուղի վանքը։ 5. Կարմիր գյուղի Քառսուն Մանկանց վանք. 6. Կոչոլի Թուրքական գյուղի վանքը։ 7. Ս. Սարգիս և Վալասալայ վանքերը Մորշխան գյուղում. 8. Քառսուն-Մանկանց վանքը Պրեխի գյուղում. 9. Ս. Կիրակոս վանքը Օձգեղում. 10. Ապշորայ վանքը Բաղաբուն գյուղում. 11. Աստվածմերդի և Սունկ-Սունկ վանքերը Խարասար գյուղում. 12. Աստրեմայր անապատը Չմշկածագ քաղաքի Սաղվին թաղում։ 13. Բեմկենուտի վանքը։

Վանքեր եղել են նաև Եփրատի ձախափնյա հարթությունում, Արաբկիրի և Չմշկածագի միջև։ Արշակ Ալպոյաճյանն այս մասին գրում է. «Անչրդիի վրայեն Շնկախ, Եփրատն անցնելէ ետք Չմշկածագի ճամբուն վրա հանդիպեցա քանի մը լքյալ վանքերու և եկեղեցիներու, որոնց պատերուն աստրերեն արձանագրություններ կային»[29]։

Դերսիմի գոտու կենտրոնական մասում՝ Ջամբեխում (Չմբեխում), եղել են նաև բավական թվով վանքեր, որոնց մի մասի ավերակների քարերը մաք-

26 Մ. Պոտուրյան, Հայ հանրագիտակ, հատ. Ա., էջ 328։

27 Ե. Լալայան, Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի, պր. 1, Թիֆլիս, 1915, էջ 535։

28 Գ. Սրվանձտյանց, նշվ. աշխ.։

29 Արշակ Ալպոյաճյան, Պատմություն Մալաթիո, Բեյրութ, 1961, էջ 168։

*բելով, այդ տարածությունը արտի են վերածել։ Սակայն ըմբեխցիներ Ավետիս Օհանյանի և Թորոս Տոնապետյանի պատմածով, որը գրի է առել Հովհ. Աճեմյանը, դեռ կիսավեր վիճակում են եղել Ջամոյի վանքը, գյուղի գլխին կողք-կողքի կառուցված երկու եկեղեցիները, Տանձիաթանուդերեի լանջերին դեմ-դիմաց կառուցված երկու եկեղեցիները, «Քարքին ճամբուն», խոզատի վրայի եկեղեցին, Վերին և Ներքին Սաղմնա եկեղեցիները[30]։ Այստեղ մի բարձրության վրա եղել է Ըմբեխի դամբարանը։ «...Ըմբեխի կամ Ջամբեխի դամբարանը կը կազմեն սրբատաշ մարմարե բարձրադիր և քով քովի դրված երեք գերեզմանաքարերը, որոնց մեջտեղինը ավելի խոշոր ու բարձր էր, քան երկու կողերունը։ Դամբարանին կամարներն ու սյուները ընկած էին ու պատերը փլած. Մեջտեղի տապանաքարին վրա գրված էր. «Յիշատակ տաճարս սբ. Մարգէ եպիսկ. ծնաւ... Թվկ. ՋԾԸ (1609)»[31]։ Նշանավոր է եղել հատկապես Հոռոմի կամ Հոռոմոսի վանքը («Գալուստ Ծերունի, գրիչ Հոռոմոսի վանքին 1494 թ.»)։ Նույն 1494 թ. վանքի առաջնորդն է եղել Արիստակես եպիսկոպոսը[32]։*

*Հոշմար քրդացած հայկական գյուղում կային երեք եկեղեցիների ավերակներ և խաչքարեր, որ բնակիչները պահպանում էին։ Մոխնտիում (ըստ Գ. Հալաջյանի՝ Մոգտուն) եղել են ութ եկեղեցիների ավերակներ, որոնք ծառայել են որպես ուխտատեղի[33]։*

*Ինն կոչվող գյուղում եղել են 9 եկեղեցիների ավերակներ։ Ջ. Թեյլըրի նկարագրությամբ գյուղը կառուցված էր Աղսու (Ճերմակ ջուր) ձորի մեջ՝ «շրջապատված մոտ երկու մղոն երկարությամբ և մեկ մղոն լայնությամբ կրաքարային բարձր, ուղղահայաց ապառաժներով։ Գյուղի առջևից դեպի վտակն է ձգվել մի մշակելի հարթություն՝ խոշոր ընկուզենիներով։ Բնակիչները ղզլբաշներ են եղել, որոնք, ինչպես Դերսիմի այլ վայրերից, այնպես էլ այստեղից դուրս են վտարել հայերին։ Հին եկեղեցիների մոտակա գերեզմանոցները լի են տապանաքարերով։ Մի շարք գլխաքարեր կրում են հայ եկեղեցու պաշտամունքային զանազան պարագաների պատկերաքանդակներ և այլ պարզ քարե քանդակներ»[34]։*

*Գյուղերի ուղղաձիգ ժայռի վրա կան իրար մոտիկ փորված մի քանի խոռոչներ, որոնցից մեջտեղինը կոչվելիս է եղել «Իշխանաց թախտ», իսկ թուրքերը անվանել են «գալե» (բերդ)։ Այս ժայռի ստորոտի փորվածքը հայերի ուխտատեղին է եղել «Քառսուն մանուկ» անունով, ուր քրդերն էլ էին ուխտի գնում։*

*Մինչև XIX դարի 40-ական թթ. գյուղի բնակիչները հայեր են եղել։ Նույն թվականներին խարբալի աշիրի (եկվոր) Ալի աղան, որ արդեն տիրած է լինում Սաղմանին, մեծ բազմությամբ պաշարում է գյուղը, հայերին առաջարկելով կամ մահմեդականություն ընդունել և մնալ իրենց ունեցվածքի տեր, կամ հեռանալ։ Գյուղացիների մեծ մասը հեռանում է։*

*1915 թ. Իննում ապրում էին 6 տուն քուրդ և 8 տուն թուրք։*

---

30 Հովհ. Աճեմյան, Տերսիմ. (անտիպ)։

31 Լ. Կ. Լյուլեճյան, Տերսիմ, «Հայրենիք» օրաթերթ. Բոստոն. 1943. N 21։

32 Մ. Պոտուրյան, Հայ հանրագիտակ. էջ 276։

33 Գ. Հալաջյան, նշվ. աշխ.։

34 J. G. Taylor, նշվ. աշխ., էջ 291։

Քողերի մեջ 1915 թ. առևտրով և արհեստով զբաղվող հայերը, թուրքերի կողմից ձերբակալվելով, Իննի ապառաժներից ցած են նետվել և սպանվել[35]։

Հնություններ.—1. Զգտիկ (հավանաբար հնում եղել է Ծակտիք)։ Չմշկածագ քաղաքի դիմաց, Թաղարա ջուր գետակի արևմտյան ափին, վիթխարի պարսպի նման 200—250 մ ուղղաձիգ բարձրացող և գետակին զուգահեռ 3—3,5 կմ երկարող «Մոռնայուն Քարը» կոչված ժայռասարի կրծքին, գետակի հունից մոտ 100—120 մ բարձրությամբ, եռաշարք, 20-ից ավելի վիմափոր սենյակներ, շարքերն իրարից 2-ական մ բարձրությամբ։ Մուտքերը 1,2×0,6 մ էին, իսկ ներսի բարձրությունը՝ մոտ 2 մ։ Սրանց արտաքին կամ ճակատային պատերի վրա կային դրսից՝ 20—25 սմ, իսկ ներսից՝ 50—60 սմ լայնությամբ և 65—70 սմ բարձրությամբ լուսամուտներ, որոնք ծառայել են նաև որպես դիտակետ։ Առաջին կամ ստորին շարքում կար մի ընդարձակ քարայր, որտեղ կարող էր տեղավորվել շուրջ 2 հազար մարդ։ Քարայրը սկզբի մասում մոտ 3 մ բարձրություն ուներ և 3—4 մ լայնություն, խորքում աստիճանաբար ցածրանում ու նեղանում էր, իսկ ներսից օդի ուժեղ հոսանք էր գալիս։ Ասում էին, որ այդ քարայրից ստորերկրյա ճանապարհ կա, որը տանում է դեպի նրա հյուսիսային բլրալանջին գտնվող բացվածքը։ Երկրորդ շարքում կային նաև երկարությամբ մեջ-միջի փորված սենյակներ։

2. Ճգնավորի քարը։ Այս ժայռը գտնվում էր Թաղարա ջուր գետակի ձախ ափին, Զգտիքի հանդիպակաց կողմը, 150—200 մ դեպի հարավ-արևելք ընկած բարձրության վրա. ուներ հատած բուրգի ձև, գրեթե քառանիստ, բութ անկյուններով և 7—8 մ բարձրությամբ։ Հատված գագաթի կենտրոնից բավական լայն ու մարդահասակ խորությամբ խոռոչ էր բացվում ժայռի մեջ և այդ խոռոչի կենտրոնից ավելի նեղ մի անցք իջնում էր ներքև՝ ժայռի հատակը։ Ըստ ավանդության դա Զգտիքի հետ ստորգետնյա հաղորդակցության անցք է եղել։ Իսկ անունը Ճգնավորի քար է դրվել այն պատճառով, որ իբր այդ խոռոչի մեջ ճգնել է ոմն ջերմեռանդ հավատացյալ։

3. Խարտիշարի հնությունները։ Այս գյուղի վանքին կից կային բազմաթիվ հնություններ, գերեզմանոցներ։ Վանքի մատուռը, պահպանվելով Մշե աղայի կողմից, կանգուն էր մինչև 1930-ական թթ.։

ա. Խոյին քարը վանքից Խարադաշ տանող ճանապարհի վրայի լայն ցածրադիր ժայռն է, որի գագաթին քանդակված էր խոյի արձանը բնական մեծությամբ։

բ. Մարմար քարը վանքի արևմտյան կողմում և նրանից բավական հեռավորության վրա գտնվող սպիտակ ժայռն է, որի վրա բարձրանում էր բնական մեծությամբ և հին հայկական կանացի տարազով, դեպի վանքը նայող մարմարյա արձանը։ Նրա կրծքի վրայի 2 տող արձանագրությունն անընթեռնելի էր դարձել։

4. Ակնիկի հնությունները։ Խարտիշարի հյուսիս-արևմտյան սահմանում. Չմշկածագից 7—8 կմ հեռավորության վրա գտնվող Ակնիկ գյուղի (նախկինում հայաբնակ և հետո՝ քրդաբնակ, 12 տուն) հյուսիս-արևելյան կողմում կային մի քանի քարայրներ, որոնք փորված էին ժայռի մեջ, իսկ հարավ-արևելյան կողմում, «Փեթակ քար» կոչված հսկա, գլանաձև երեք սյուներն էին,

35 Լ. Կ. Լյուլեճյան, Տերսիմ, «Հայրենիք» օրաթերթ, Բոստոն, 1943, № 17։ Հովհ. Աճեմյան, Տերսիմ (անտիպ), էջ 31։

դեղնակարմրավուն, չեչոտ քարից։ Դասավորված էին եռանկյունաձև, իրարից անհավասար հեռավորության վրա։ Սյուների գագաթի տրամագիծը 1 մ ավելի կլիներ, իսկ ներքևի մասը՝ վերինի կրկնապատիկն էր։ Երկուսի բարձրությունը կլիներ 3 մ, իսկ միջտեղինը ավելի բարձր էր։ «Այս քարե սյուները, որոնք Հայաստանի մեջ շատ են, ըստ ուսումնասիրությունների, նաիրյան շրջանի սահմանաքարեր են»,— գրում է Ա. Ծեթվաճյանը[36]։

5. Հաղթուկ գյուղի «Բարնուց քարը»։ Եռահարկ քարայր է, գտնվում էր գյուղի հարավային կողմում, Չմշկածագից 10—12 կմ հեռավորության վրա։ Այն փորված էր հարավ-արևելքից հյուսիս-արևմուտք 8—9 հարյուր մետր երկարող և երկու կողմից աստիճանաբար ցածրացող մի վիթխարի սապատ ներկայացնող բլրի կենտրոնական մասի հյուսիսային լանջի հսկա ժայռի մեջ։ Նրա մուտքը գրեթե ժայռի կեսից էր և մտնելու համար պետք էր մագլցել բեկյալ գծի նման բարձրացող նեղլիկ շավիղով[37]։

6. Հավշաքար (ըստ ոմանց՝ Հաշվաքար) գյուղի հնությունը։ Սա հնագույն հայաբնակ գյուղերից էր, որին քրդերը տիրել են 1900-ական թթ.։ Այն գտնվում էր Չմշկածագից 20 կմ հեռավորության վրա և վարչականորեն ենթարկվում էր Խողատին։

Այս գյուղով 1866 թ. սեպտեմբերի 15-ին անցել է Ջ. Թեյլորը, որը գրում է. «Փոքր գյուղ էր, զուտ հայաբնակ։ Այն հաստատված էր տափարակի վրա։ Գյուղի ծայրին, քարոտ բլրի վրա բարձրանում էր վիթխարի ապառաժը, իսկ ապառաժի գագաթին թառել էր մի ավերակի մնացորդ։ Ժայռի գագաթից դուրս են ցցված ասեղանման սուր և սղոցակերպ մանր աշտարակներ»[38]։

7. Ամութխայի հնությունը։ Կենտրոնական Դերսիմի մեծ գյուղերից էր, 35—40 տնտ. և պատկանում էր Խոջանի աշիրի պետ Սեիդ Իբրահիմին (Իդաբա), որը 1915 թ. Մեծ եղեռնի ժամանակ մեծ օգնություն է ցույց տվել հայերին։ Գյուղն ունեցել է գաղտնի քարայր, Օվաջուղի ճանապարհի վրա, մի ձորի մեջ։ Այդ գյուղում ապաստանած և քարայրն այցելած Եղիազար Պապիկյանն իր «Տերսիմի հուշեր» անտիպ աշխատության մեջ նկարագրում է, որ մոմի լուսավորությամբ երկար, նեղ միջանցքով քայլելով, հասնում ես կամարակապ մեծ սրահը, ուր հանդիպում ես մի շարք փայտյա արձանների։

8. Ղզըլ-ղալա գյուղի ուրարտական արձանագրությունը։ Գտնվում է Մեծկերտից (Մազկերտ) մոտ 15 կմ դեպի արևելք, վարչականորեն ենթարկվում էր Մեծկերտին։ Այն կառուցված էր համանուն բերդի ստորոտում։ Գյուղի եկեղեցու պատի մեջ պահպանված է եղել արձանագրությամբ մի քար[39]։

Հնությունները սրանով չեն սահմանափակվում։ Ա. Ալպոյաճյանը իրավացիորեն գրում է. «Ամեն անոնք, որոնք ոտք կը դնեն Տերսիմ, պիտի տեսնեն բազմաթիվ փլատակներ, եկեղեցիներ, վանքեր, մատուռներ, գերեզմանոցներ, դամբաններ, խաչքարեր, ճգնարաններ և ուխտատեղիներ։ Այս բոլոր կրոնական վայրերը ունին իրենց ավանդավեպերը, որոնք կը հարգվին ու կը պաշտպանվին քրդերեն։ Երկայն գյուղի հոչակավոր, հրաշակերտ կես-ավերած մեկ

36 «Գեղունի», Վենետիկ, 1947, էջ 33—34։

37 Հ. Հ. Գասպարյան, նշվ. աշխ., էջ 44, 97 և 103։ Հովհ. Սուքիասյան, «Հաղթուկ» գյուղը (անտիպ)։

38 J. G. Taylor, նշվ. աշխ., էջ 320—321։

39 Արձանագրությունը հրատարակված է. տե՛ս Г. А. Меликишвили, Урартские клинообразные надписи, М., 1960, տեքստ 42։

վանքին Ը. դարեն մնացած գեղեցկությունը Անին հազիվ ունի։ Այս վանքին հետ կը միանա Հալվորի Ս. Կարապետը, Ջեմպեի դամբարանը, Ծագի կամ Խննի 9 եկեղեցիները, Բել վանքը, Մեծ վանքը, Ճգնավորը, Ղառսուն Մանուկը, Ս. Սանդուխտը, Ս. Հովհաննեսը ևլն»[40]։

Այն ամենը, ինչ սեղմ կերպով նկարագրեցինք այստեղ, այժմ դարձել է հուշ, քանի որ թուրքական կառավարությունը 1937 թ. հիմնահատակ ավերեց հնագույն այդ արծվաբույնը և քաջարի ժողովրդի ղեկավարներին ոչնչացնելուց հետո, մնացածին ցրեց ամբողջ Թուրքիայով մեկ, յուրաքանչյուր գյուղում տեղավորելով 1—2 ընտանիք։ Սակայն ըմբոստ դերսիմցին դաշտում ապրել չկարողանալով երկար չհանդուրժեց։ Նրանց մի մասը փախստական վերադարձավ իր պապենական երկիրը. անշուշտ, ոչ նախկին զորությունով կամ բազմամարդությամբ։

## ДЕРСИМ

(Историко-этнографический очерк)

А. О. ГАСПАРЯН

(Резюме)

В очерке приводятся интересные историко-этнографические сведения об армянском и курдском населении провинции Дерсим. Особенно подробно говорится об исторических памятниках этого района. Помимо литературных материалов автор, уроженец Дерсима, широко использовал свои воспоминания и личные наблюдения.

40 «Հայրենիք», Բոստոն, 1931, № 10, էջ 90։